## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապոյտ Խաչի Պօմոնի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր-Վարդանեան եղբայրներուն, համայն Տէր-Վարդանեան ընտանիքին եւ բոլոր պարագաներուն, իրենց մօր եւ ազգականին՝ այրի Տիկին Տէր-Վարդանեանի մահուան առթիւ:

Այս առթիւ մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.

Տէր-Վարդանեան եղբայրներէ 50 Ն.Ֆ. Պօմոնի դպրոցին եւ 30 Ն. Ֆ. Կ. Խաչի աղքատներուն, այրի Տիկին Ատրինէ Կարապետեանէ 5, Պ. Վահան Խաչօղլեանէ 10, Պ. Վարդգէս Վարդանեանէ 10, Պ. Վարդան Սէրէնկիւլեանէ 10, Պ. Տիգրան Մահիկեանէ 20, Տէր եւ Տիկին Յ. Տօլպաչեանէ 20, Տէր եւ Տիկին Ս. Գասպարեանէ 20, Պ. Մեսրոպ Քասքասեանէ 5, Պ. Ժիրայր Ոսկեանէ 10, Պ. Սերժ Սարգիսեանէ 10, այրի Տիկին Հ. Միկիրճեանէ 5 և Տէր և Տիկին Թ. Գըլըճեանէ 20 Ն.Ֆ.:

Նոյնպէս շնորհակալութեամբ ստացած ենք Տէր եւ Տիկին Գ. Պաղտասարեանէ 25 եւ Տէր եւ Տիկին Մ. Անդրէասեանէ 10 Ն. Ֆ. ողբ. Յ. Իսպիրեանի մահուան առթիւ՝ փոխան ծաղկեպսակի:

Իսկ Զատկի առթիւ շնորհակալութեամբ ստացած ենք Տիկին Շ. Թոնկուրեանէ 20, Պ. Արամ Գաբրիէլեանէ 10, Տիկին Անսուրեանէ 5, Տիկին Ասլանեանէ 10, Պ. Մարկոսեանէ 5 և Պ. Գ. Քիւրտօղլեանէ 5 Ն. Ֆ. իր մօր մահուան երկրորդ տարելիցի հոգեհանգստեան առթիւ:

## Ա Զ Դ

Հ. Բ. Ը. Մ.ի Փարիզի նորակազմ Տիկնանց Օժանդակ Միութիւնը Մայիս 6ին, երեկոյթ մը կազմակերպած է, բարձր հովանաւորութեամբ Կաթող. Պատուիրակ Սերովբէ եպիսկոպոս Մանուկեանի, ՊՕՂՈՍ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱՅԻ հիմնած բազմօգուտ գործին, Հ. Բ. Ը. Մ.ի 54րդ տարեդարձին առթիւ:

Ջանք չէ խնայուած արժանավայել ձեւով տօնելու համար յիշատակի եւ յարգանքի այս հանդիսութիւնը, հանդէպ մեծ Հայուն:

Գեղարուեստական խանդավառ բաժին մը ապահովելու համար հրաւիրուած են Պ. Կարպիս Ափրիկեան եւ «Սիփան - Կոմիտաս» երգչախումբը, ինչպէս նաեւ Պ. Մկրտիչ Պօղոսեան (երգ) եւ Օրիորդ Գաբոյեան (արտասանութիւն):

Կը սիրենք յուսալ որ հոծ բազմութիւն մը պիտի լեցնէ Լիւթէսիայի սրահը, այս ուրբաթ իրիկուն:

Հ.Բ.Ը.Մ.Ի ՏԻԿՆԱՆՑ ՕԺԱՆԴԱԿ ՄԻՈՒԹԵԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ՄԵԾԱՇՈՒՔ ՀԱՆԴԷՍ

Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ
ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ
ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ ՅԻՍՆԱՄԵԱԿԻՆ
ԱՌԹԻՒ

Մայիս 7ին, շաբաթ իրիկուն, ժամը 21ին
ՍՓԼԱՆՏԻՏ ՕԹԷԼԻ
ՀԱՆԴԻՍԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ
Նախագահութեամբ
Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովի փոխ-Ատենապետ
ՏՈՔԹ. Ա. ՊԻՒՅԻՒՔԵԱՆԻ
Գեղարուեստական ճոխ բաժին
Մեծարանք թէյով կամ շամբանեայով եւ հայկական խմորեղէններով
Ո՛չ հանգանակութիւն, ո՛չ Թոմպոլա
Ծախքերու մասնակցութիւն 5 Ն. փրանք:

## ԱՊՐԻԼ 11-24Ը ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պորտոյի «Մուրատ» խումբի, այս կիրակի ժամը ճիշդ 15,30ին, Մուլէն - Պլէոյի սրահը (Սընոն):

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 217-218 (Յունուար - Փետրուար), 48 էջ, ճոխ, այլազան եւ միշտ հետաքրքրական բովանդակութեամբ.—

Էջը... բժշկութեան մէջ (ԽՄԲ. — Իմ սիրելի Հայաստանը (ԱՍԱՖԵՒ). — Օդը սնունդ մըն է (ՏՈՔԹ. ՆԱՒԱՍԱՐԴ). — Վառարանի մասին (ՏՈՔԹ. ՂԱԶԱՐԵԱՆ). — Ի՞նչ են կենսանիւթերը եւ ի՞նչպէս հասկնալ անոնց պակասը (ՏՈՔԹ. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ). — Ջաւակ առնել պուլիկով (ՏՈՔԹ. ԱՅՎԱԶԵԱՆ). — Ի՞նչ անուն տալ երախային (ՀԱՆՐԻ ՄԱՍԷ). — Խրատներ մայրերուն (ԼԵՆԻՆԿՐԱՏԻ ՄԱՆԿԱԲԱՐՁԱԿԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆ). — Հիւանդը եւ իր սնունդը (ՏՈՔԹ. ՊԸԼՈՆՏԷԼ). — Զլախտի մասին (ՏՈՔԹ. ՖՈՒՐՈՒՆՃԵԱՆ). — Թոքախտը յարձակողականի անցաւ (ՓՐՈՖ. ԷԹԻԷՆ ՊԵՌՆԱՐ). — Սիֆիլիզը յարձակողականի անցաւ (ՏՈՔԹ. ՌՈՒՍԷ). — Միշտ մտածեցէք խլիրդի (քանսէր) մասին (ՓՐՈՖ. ԺԱՆԸՆէ). — Թունաւորուեցաւ, ի՞նչ ընել (ԽԱՉՈՒՀԻ):

Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք): Արտասահման 20 նոր ֆրանք (2000 ֆ.) երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք (3750 ֆր.):

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)





Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՍԵԲԱՍՏԻՈՅ ՆԱՀԱՆԳԱՅԻՆ ՄՈՒՐԱՏ ՌՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ Մայիս 7ին, «Ռուա Ռընէ» սրահին մէջ, ժամը 21,30էն մինչեւ առաւօտ

ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

Այս առթիւ պիտի քաշուի Միութեան 1959ին հրապարակ հանած վիճակահանութեան տոմսերը:

Ճոխ պիւֆէ — Մուտք 5 Ն. Ֆ.

## Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Պզտիկներու արձանագրութիւնները պիտի փակուին Մայիսի վերջ:

Կեդրոնի արձանագրութեան օրերն են Չորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13-14 եւ 18-20: Ասկէ դուրս ժամադրութեամբ, հեռախօս Թրիւտէն 27-35:

Փարիզէն դուրս դիմել տեղական մասնաճիւղերուն:

ՄԱՐՍԷՅԼ

ՔԱՂԱՔ, Տիկ. Թութէլեան, 4 Ռիւ Փարմանթիէ:

ՊՕՄՈՆ, Տիկ. Տօլպաչեան, 23 Պուլվար տը Պօմոն:

ՍԷՆ ԺԵՐՈՄ, Տիկ. Շալճեան:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կապ. Խաչի հանդէսը Հ. Օ. Մ.ի յիսնամեակին առթիւ, Լիւթէսիայի մեծ սրահին մէջ

ՄԱՅԻՍ 22ԻՆ:

Մանրամասնութիւնները յաջորդով:

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱՐԵՒՄՏ. ԵՒՐՈՊԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ եւ Փարիզի Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրեն հետեւեալ մարմինները.—

5 Մայիս, հինգշաբթի՝ Փոքրիկ:
6 Մայիս, ուրբաթ Արծիւ:
7 Մայիս, շաբաթ՝ Զաւարեան:
8 Մայիս, կիրակի՝ Վարդան:

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի եւ Շրջ. Կ.ի ներկայացուցիչները:

ՎԱԼԱՆՍԻ Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը այս շաբաթ երեկոյ, ժամը 8,30ին, «Հարոնեան» ակումբը:

Պարտաւորիչ ներկայութիւն:

ԿՌԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեանի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 21ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:

## Ի ՆՊԱՍՏ ՊՈՒԱ-ՔՈԼՈՄՊԻ

Հայկական դպրոցին բացառիկ ներկայացում հայկական ֆիլմերու Մայիս 10, երեքշաբթի իրիկուն ժամը ճիշդ 20,45ին Սինեմա Ռէքս, 64, Ռիւ տէ Պուրկինեօն, Անիէռ (Պուա-Քոլոմպի կայարանին մօտ):

Կը ցուցադրուին շրջանին մէջ առաջին անգամ ըլլալով ԿԱՄՕ պատմական ժապաւէնը եւ Սեւանայ լիճին Գաղտնիքը (Հայախօս են երկու ֆիլմերն ալ):

Մուտք 2,00 եւ 3,00 Նոր ֆրանք:

## ՄԱՅԻՍ 28Ը

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Շաբաթ, Մայիս 28, ժամը 21էն մինչեւ լոյս, 6րդ Թաղապետարանի սրահը։

ՎԻԷՆԻ ՄԷՋ

Մայիս 29ին, կիրակի կէսօրէ ետք։

## ԱՊՐԻԼ 11-24Ը

ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3,30ին, Ռիւ Ժէի Սէն – Լուի սրահին մէջ, նախաձեռնութեամբ տեղւոյն Հայ Ազգ. Եկեղեցական Միութեան։

Կը նախագահէ Պ. Տ. ՍԹԱՄՊՈՒԼԵԱՆ

Խօսք կ'առնեն մասնակցող կազմակերպութիւններու ներկայացուցիչները։

Գեղարուեստական բաժին՝ Կրընոպլի Կապոյտ Խաչի պատրաստութեամբ։

### ՆՈՒԷՐ

Ողբացեալ Սահակ Տէր–Թովմասեանի մահուան առթիւ, Տէր եւ Տիկին Գէորգ Մարանկոզեան 50 Ն. Ֆ. կը նուիրեն Ֆ. Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին։

×

Փոքրիկն Գլօտ Տէր–Ղուկասեան իր մեծ հայրիկին եղբօրը մահուան երրորդ տարելիցին առթիւ 10 Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին։

ՍԵԲԱՍՏԻՈՅ ՆԱՀԱՆԳԱՅԻՆ ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Շաբաթ Մայիս 7ին, «Ռուա Ռընէ» սրահին մէջ, ժամը 21,30էն մինչեւ առաւօտ

ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

Այս առթիւ պիտի քաշուի Միութեան 1959ին հրապարակ հանած վիճակահանութեան տոմսերը։

Ձոխ պիւֆէ Մուտք 5 Ն. Ֆ.

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Տէր եւ Տիկին Պօղոս Գորգիկեան ցաւակցութիւն կը յայտնեն Տէր եւ Տիկին Ժիրայր եւ Վաղարշակ Տէր–Վարդանեանի եւ ընտանիքին, իրենց մօր մահուան առթիւ։

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Իթալիի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը 3ին, Ժանթիյիի դըպրոցի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։

Պատգամաւորներու ընտրութիւն։

Կը խնդրուի ընկերուհիներէն ներկայ ըլլալ։

ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ

Հայ Գրողներու Ընկերակցութեան ընդհանուր ժողովը այս չաբաթ ժամը 17ին, Որբունիի սրահը՝ 6, Ռիւ Լամարթին (Մէթրօ Քատէ)։ Օրակարգ.— ա) Վարչական գործունէութեան տեղեկագիր, բ) Ընտրութիւն նոր վարչութեան։

Ըստ կանոնագրի, ժողովը օրինական կը համարուի ինչ որ ալ ըլլայ ներկաներուն թիւը։ Ժողովին կրնան մասնակցիլ բոլոր հայ գրողները անխտիր։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կրօն. Ընկերակցութեան վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները, նոր ֆրանքով.— Կուտուզեան – Եօթնեղբայրեան պսակադրութեան առիթով Քիւփէլեան ընտանիքէն 30։ Տէր եւ Տիկին Ղ. Գասպարեանէ, իրենց ողբացեալ մօր մահուան քառասունքին առիթով 30։ Նոյն առիթով Տիկ. Է. Զպլաքեանէ 30։ Ողբացեալ Թորգոմ Զաքարեանի մահուան առիթով Պ. Պ. Ջ. Ալեքսանեանէ եւ Օ. Հայկազեանէ 20ական, փոխան ծաղկեպսակի։

× Պուքրէշէն Սարգիս Գարանֆիլեան կը փնտռէ իր եղբայրները՝ Գրիգոր եւ Ղազար։ Երեւանէն Ռոզա Մաքինէսեան կը փնտռէ իր զաւակները՝ Հայազատ եւ Յովհաննէս։ Դիմել Եկեղեցի։

Imprimerie Spéciale du journal « Haratch »

ԱՊՐԻԼ 11-24Ը ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ.

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պորտոյի «Մուրատ» խումբի, այս կիրակի ժամը ճիշդ 15,30ին, Մուլէն – Պլէոյի սրահը (Սընոն)։

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

### Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Պզտիկներու արձանագրութիւնները պիտի փակուին Մայիսի վերջ։

Կեդրոնի արձանագրութեան օրերն են Չորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13–14 եւ 18–20։ Անկէ դուրս ժամադրութեամբ, հեռախօս Թիւտէն 27–35։

Փարիզէն դուրս դիմել տեղական մասնաճիւղերուն։

ՄԱՐՍԷՅԼ

ՔԱՂԱՔ, Տիկ. Թութէլեան, 4 Ռիւ Փարմանթիէ։

ՊՈՄՈՆ, Տիկ. Տօլպաչեան, 23 Պուլվար տը Պոմոն։

ՍԷՆ ԺԵՐՈՄ, Տիկ. Շալճեան։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կապ. Խաչի հանդէսը Հ. Օ. Մ.ի յիսնամեակին առթիւ, Լիւթէսիայի մեծ սրահին մէջ

ՄԱՅԻՍ 22ԻՆ։

Մանրամասնութիւնները յաջորդով։

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱՐԵՒՄՏ. ԵՒՐՈՊԱՅԻ Կ. ԿՈՄԻՏԷՆ եւ Փարիզի Շրջ. Կոմիտէն ժողովի կը հրաւիրեն հետեւեալ մարմինները.—

5 Մայիս, հինգշաբթի՝ Փոթորիկ։

6 Մայիս, ուրբաթ Արծիւ։

7 Մայիս, շաբաթ՝ Զաւարեան։

8 Մայիս, կիրակի՝ Վարդան։

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի եւ Շրջ. Կ.ի ներկայացուցիչները։

Ի ՆՊԱՍՏ ՊՈՒԱ–ՔՈԼՈՄՊԻ

Հայկական դպրոցին բացառիկ ներկայացում հայկական ֆիլմերու Մայիս 10, երեքշաբթի իրիկուն ժամը ճիշդ 20,45ին Սինեմա Ռէքս, 64, Ռիւ տէ Պուրկինեօն, Անիէռ (Պուա–Քոլոմպի կայարանին մօտ)։

Կը ցուցադրուին շրջանին մէջ առաջին անգամ ըլլալով ԿԱՄՕ պատմական ժապաւէնը եւ Սեւանայ լիճին Գաղտնիքը (հայախօս են երկու ֆիլմերն ալ)։

Մուտք 2,00 եւ 3,00 Նոր Ֆրանք։

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քատէի սրահը։ Կը խօսի Պ. Բորիս Նազարեան, Բ. մասը իր նախորդ դասախօսութեան՝ «Հայաստանի վիճակագրութիւնը համեմատական վերլուծութեամբ դրացի ժողովուրդներու հետ»։ Կը խնդրուի ըլլալ ճշդապահ։





## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐԸ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕԳՆՈՒԹԵԱՆ ՄԱՐՄՆԻ ԿՈՂՄԷ

(ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ)

կիրակի, Մայիս 8, ժամը 14,30ին, Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ

**47, Rue des Ecoles, Métro : St-Michel et Odéon**

Բարձր հովանաւորութեամբ՝ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

(Կաթող. Պատուիրակ Եւրոպայի Հայոց)

եւ ՖՐԱՆՍԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻՆ

Նախագահութեամբ՝ ակադեմական

**PROF. CAMILLE LIANի**

Secrétaire Général du Congrès Mondial des Cardiologues,

Commandour de la Légion d'Honneur

Սիրայօժար կը մասնակցին՝ Հիւկէթ Աժտէրեան (դաշնակ), Ալիս Պօյաճեան (պար) Տիկին Ռուա–Սաաթճեան (երգ), Մարիվօլ լը Տիզէս (ջութակ), Մարիէթ Նորատունկեան (տաւիղ), Ժիզէլ տը Մոնսօ (թաւջութակ) Սեդրակ Եավրուեան (դաշնակ), Հանրի Մարգարեան (երգ), Իրմա Պասմաճեան (արտասանութիւն), Արլէթ Մելքոնեան (պար), Արտաշէս Գմբէթեան (արտասանութիւն), Սերժ Նահապետեան (արմոնիքայի երիտասարդ վարպետը), Պերճ Պէրպէրեան (պար), Եդուարդ Ազամալեան (պար) եւ

ՆԱՅԻՐԻ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ ղեկավարութեամբ ԳԷՈՐԳ ԵԱՆՊԷԿԵԱՆԻ

Դաշնակով կ'ընկերանան Ֆրանսուազ Տիւփրէ, Անժէլ Թագւորեան, Միշէլ Էմըրիք

Տոմսերու գինն է 1, 2, 3 եւ 5 Ն. Ֆ.։ Կը ծախուին Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին՝ 15, Ռիւ Ժան Կուժոն, ինչպէս նաեւ Կարմիր Խաչի մասնաճիւղերուն մօտ։

ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

## ԵՂԻՇԷ ՊԱՏՐԻԱՐՔ ԴՈՒՐԵԱՆԻ

ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

19 Յունիս, կիրակի կէսօրէ ետք ժամը 2,30ին

Հովանաւորութեամբ Հայրապետ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Նախագահութեամբ Ակադեմական ԼՈՒԻ ՄԱՐԷՆԻ

եւ նախաձեռնութեամբ Փարիզի եւ շրջանի եկեղեցական, ազգային, մշակութային բոլոր միութիւններուն։

Ակադեմական եւ գեղարուեստական ճոխ բաժիններով։

Նկատի ունենալ այս թուականը։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԿՐԸՆՈՊԼԻ Կապ. Խաչը շնորհակալութեամբ ստացած է Պ. Նազարեանէ (Լա Քոթ – Ս. Անտրէ) իր ողբացեալ կնոջ մահուան քառասունքին առիթով 20 Ն. Ֆ. ի նպաստ իր դպրոցին :

×

Լիոնի Եկեղեցաչէն Տիկն. Միութիւնը խորին շնորհակալութեամբ եւ երախտիքով ստացած է Կապոյտ Խաչի 300 Ն. Ֆ. ի նուիրատուութիւնը ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան :

Կապոյտ Խաչը առաջին անգամ չէ որ կ'ընէ այսպիսի կարեւոր նուիրատուութիւններ : Ամէն առթիւ, ոչ միայն բարոյական այլ նաեւ կարեւոր նուիրատուութիւններով քաջալերած է Լիոնի եկեղեղեցւոյ շինութեան գործը : Այս անգամ ալ իրենց պարահանդէսէն գոյացած հասոյթին կարեւոր մասը շինութեան կը յատկացնեն :

Եկեղեցաչէն Տիկն. Միութիւնը նոյնպէս շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները.— Փոքրիկն Սեդա Տիւյմէճեանի մկրտութեան առթիւ՝ Տէր եւ Տիկ. Մանուկ Մանուկեանէ 50 Ն. Ֆ., Պ. Յակոբ Փափազեանէ 50, ՈՄՆ 50 Ն. Ֆ. : Ս. Զատկի առթիւ Պ. Արտաշէս Դանիէլեանէ 20 Ն. Ֆ. :

×

Լիոնի Ազգատախնամ Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Ռիքամարիէն Տիկին Եսթեր Պալեանէ 10 Ն. ֆրանք :

## SALLE GAVEAU

**45, RUE LA BOETIE MÉTRO MIROMESNIL**

Հինգշաբթի, 19 Մայիս, ժամը 21ին

**Concerts Chouteau**

*ՍԻՆՖՈՆԻՔ ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ*

*Ղեկավարութեամբ*

### ԱՐԱ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

*Մասնակցութեամբ*

Փարիզի Հայկական Երգչախումբին

ԻՐԻՍ ՊԻԻԼՊԻԻԼԵԱՆԻ

*Յայտագիրը նուիրուած է հեղինակին գործերուն : (Լերան վրայ, Աչնանային, Տաւրազամի հարսը)*

ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳԸ

ԻԲՐ ՕՐԱԹՈՐԻՕ

նուագախումբի, երգչախումբի, մեներգի եւ երգեհոնի համար

120 հոգինոց խումբի կողմէ :

*Տոմսերու համար դիմել՝ Պարսամեան եւ Բալուեան գրատուները, եկեղեցւոյ դիւանատունը, երգչախումբի անդամներուն եւ Ա. Պարթեւեանի*

14, Ռիւ Փըբի, Հեռ. Պօցարիս 99-22

Գին՝ 2,50, 4,50, 7, 9, եւ 10 Ն. Ֆ.

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՊԱԼԱՔԵԱՆ ՍՐԲ. Ի ՇԻՐՄԻՆ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԻՒՆ

Ե. ՑՈՒՑԱԿ

Պօմոնէն. Պ. Պ. Գր. Ամանաթեան 50 Ն. Ֆ., Տէր եւ Տիկ. Կարապետ Ծովիկեան 20, Պետրոս Աւոյեան, Արտ. Վանոյեան, Անդրանիկ Պետրոսեան, Եղսա Եղիկեան, Մանուէլ Տէր-Մեսրոպեան եւ Խանըմիկ Ներսէսեան 10ական, Տիկ. Արմենուհի Գըլըճեան, Աննա Վարպետեան, Մաքրուհի Արութեան 5ական Ն. Ֆրանք : Պ. Պ. Վրէժ եւ Գրիգոր Եկլգովանեան եղբարք՝ 100, գումար 245 Ն. Ֆ. :

Վիէնի ազգայիններէն. Պ. Պ. Մ. Մուրատեան, Պ. Ստեփանեան, Հ. Յակոբեան 10 Ն. Ֆ. Ս. Արամեան, Յ. Դանիէլեան, Կ. Սապոնճեան, Մ. Զոպոյեան, Ն. Ռատիկեան, Ա. Խլոյեան եւ Տ. Մուրատեան 5ական, Յ. Թէճիրեան 4, Ա. Մաղաքեան 3, Ե. Ութուզեան 2 Ն. Ֆրանք :

Վիէնի գումար՝ 74 Ն. Ֆրանք :

Վալանսի ազգայիններէն. Արժ. Տ. Սահակ Ա. քհնյ. Պապիկեանի միջոցաւ.— Պ. Պ. Ճերանեան եղբարք եւ Ն. Արապեան 50ական Ն. Ֆ., Պ. Հարոնեան եւ Ա. Հացագործեան 20ական, Ն. Աճէմեան, Մ. Մազսուտեան, Յ. Կօչկարեան, Նազարէթ Պալթայեան, Ստ. Զօրզօփեան, Յովսէփ Կուտեան, Տիգրան Ազամեան 10ական, Շահան Հացագործեան, Յ. Անտոնեան, Յ. Չէքէմեան եւ Յ. Թէրզիպաշեան 5ական Ն. Ֆրանք :

Վալանսի գումար՝ 230 Ն. Ֆրանք :

### ՄԱՅԻՍ 28 Ը

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Շաբաթ, Մայիս 28, ժամը 21էն մինչեւ լոյս, 6րդ Թաղապետարանի սրահը :*

ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Մայիս 29ին, կիրակի կէսօրէ ետք :*

### Կ'ՈՒԶՈՒԻ

*Երիտասարդ մը կէս օրուան (ժամը 14էն 17) աշխատանքի համար : ԱՆԶԱՄԲ դիմել Յառաջի վարչութեան կէս օրէն յետոյ :*

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Փարիզի կամ արուարձաններու մէջ, վարձու երկու սենեակ, խոհանոց, մատչելի պայմաններով :*

*Դիմել «Յառաջ»ին :*

### Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

*Պզտիկներու արձանագրութիւնները պիտի փակուին Մայիսի վերջ :*

*Կեդրոնի արձանագրութեան օրերն են Չորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13-14 եւ 18-20 : Ասկէ դուրս ժամադրութեամբ, Հեռախօս* Թրիւտէն 27-35 :

*Փարիզէն դուրս դիմել տեղական մասնաճիւղերուն :*

*ՄԱՐՍԷՅԼ*

*ՔԱՂԱՔ, Տիկ. Թութէլեան,* 4 Ռիւ Փարմանթիէ :

*ՊՕՄՈՆ, Տիկ. Տօլպաշեան,* 23 Պուլվար տը Պօմոն :

*ՍԷՆ ԺԵՐՈՄ, Տիկ. Շալճեան :*



КԻՐԱԿԻ, ՄԱՅԻՍ 29, ԺԱՄԸ 20,45ԻՆ

**SALLE CHOPIN 8, Rue Daru Paris 8e**

## ՄԱՅՐԵՐՈՒ ՏՕՆԸ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԿՈՂՄԷ

Թատերական ներկայացում, երգ, արտասանութիւն

*Տեղերը ապահովել դիմելով հինգշաբթի օրերը ժամը 5էն 7,* 32 Ռիւ տը Թրէվիզ, *վարժարանը, ինչպէս նաեւ* Արաքս *վաճառատունը : Հանդէսին օրը կարելի չէ տոմսակ գտնել :*

ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

## ԵՂԻՇԷ ՊԱՏՐԻԱՐՔ ԴՈՒՐԵԱՆԻ

ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

19 Յունիս, կիրակի կէսօրէ ետք ժամը 2,30ին

*Հովանաւորութեամբ Հայրապետ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ*

*Նախագահութեամբ Ակադեմական ԼՈՒԻ ՄԱՐԷՆԻ*

*եւ նախաձեռնութեամբ Փարիզի եւ շրջանի եկեղեցական, ազգային, մշակութային բոլոր միութիւններուն :*

Ակադեմական եւ գեղարուեստական ճոխ բաժիններով :

*Նկատի ունենալ այս թուականը :*

ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷ'Ք ԵՒ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՑԷ'Ք

Ա Ղ Ք Ա Տ Ա Խ Ն Ա Մ Ի

## ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՅՈՒՆԻՍ 12, ԺԱՄԸ 15էն 22

*ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ*

Մանրամասնութիւնները յաջորդիւ :

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ

45րդ տարեդարձը Վիէնի մէջ, Մայիս 28ին, շաբաթ օր :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկ. Յասմիկ Զաքարեան եւ զաւակները՝ Սոնա, Կարօ, այրի Տիկ. Արուս Պօյաճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Յակոբ Քատայիֆեան եւ զաւակները, այրի Տիկ. Սիրվարդ Գուրեան եւ զաւակները եւ ընտանեկան բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց, որ անձամբ, ծաղկեպսակով, նամակով եւ բարեկամական նուիրատուութեամբ իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց ամուսնոյն, եղբօր, քեռորդւոյն եւ փեսին ու ազգականին, ողբացեալ* Թորգոմ Զաքարեանի *դառնակսկիծ մահուան առթիւ, որ պատահեցաւ 24 Ապրիլ՝ յանկարծամահ, 53 տարեկան հասակին :*

*Մարմինը ամփոփուեցաւ տեղւոյն* ՍէնՓիէր *գերեզմանատան մէջ Ապրիլ 26ին :*

## ՄԱՅԻՍ 28 Ը

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Շաբաթ, Մայիս 28, ժամը 21էն մինչեւ լոյս, 6րդ Թաղապետարանի սրահը:*

ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Մայիս 29ին, կիրակի կէսօրէ ետք:*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Վալանսի մէջ «Մայիս 28»ը կը տօնուի Մայիս 28ին, շաբաթ երեկոյր պետական Թատրոնի չքեղ սրահին մէջ:*

×

*Իսիի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի* խառնաւոր *խումբի տարեկան խնճոյքը Մայիս 29ին:*

×

*Ֆ. Կապ. Խաչի հանդէսը Հ. Օ. Մ.ի յիսնամեակին առթիւ, Լիւթէսիայի մեծ սրահին մէջ*

ՄԱՅԻՍ 22ԻՆ:

*Մանրամասնութիւնները յաջորդով:*

*Կ'ՈՒԶՈՒԻ*

*Երիտասարդ մը կէս օրուան (ժամը 14էն 17) աշխատանքի համար: ԱՆՁԱՄԲ դիմել Յառաջի վարչութեան կէս օրէն յետոյ:*

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ

45րդ տարեդարձը Վիէնի մէջ, Մայիս 28ին, շաբաթ օր:

## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ
## Ս. ՂԱԶԱՐ - ՎԵՆԵՏԻԿ

ԵՒ

ՇՐՋԱԿԱՅՔԸ

*ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս 6*
*ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս 31*

*Հռոմի Ողիմպիական Խաղերը զբօսաշրջիկներու խճողում պիտի պատճառեն այս տարի Իտալիոյ մէջ:*

*Մեր խումբին հանգիստ ճամբորդութիւնը եւ լաւագոյն բնակութիւնը օր առաջ ապահովելու համար, կազմակերպութեան աշխատանքները սկսած են:*

*ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ*

*Օրերը շուտ կ'անցնին, ցանկը շուտով կ'ամբողջանայ:*

*ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆՑ ՀԱՄԱՐ ԴԻՄԵԼ՝*

Պ. ԹԱՐՈՆ

58, Bd. Serrurier, PARIS 19 - Métro Pré-St-Gervais

Ն. ՄԱՅԻՍԵԱՆ

45, Rue de Trévise' PARIS 9 - Tél. TAI. 49-40

(Գալիքին մէջ)

Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ

11, Ave. Béranger, ARNOUVILLE-LES-GONESSE (S. et O.)

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քառէի սրահը. պիտի տրուի Ա. Խաչատուրեանի Սալ Փլէյէլի նուագահանդէսին ձայնագրուած Քոնչէրթօն եւ Վարպետին այցը Սեւոր Մուրատեան վարժարանն ու այլ վայրեր, գունաւոր ժապաւէնով: Ըլլալ ճշդապահ:*

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

SALLE PAUL FARALICQ

21, Rue Yves Toudic (Mètro ; Bonsergent et République)

Երեքշաբթի, 24 Մայիս, ժամը 21ին

*ՆԱԶԱՐԷԹ ՊՇՏԻԿԵԱՆ կուտայ*

ԹԱՏԵՐԱԿԱՆ ԾԻԾԱՂԻ ԵՐԵԿՈՅԹ ՄԸ, ուր Փարիզահայ ամենասիրուած դերասաններու կազմով կը ներկայացուի՝

## ՕՐՀՆՈՒԱԾ ԱՐՀԵՍՏԸ

խիստ ծիծաղաշարժ կատակերգ. 3 արար *Մոլիէրի «Ակամայ Բժիշկը» հանրածանօթ գործէն հայկական կեանքի վերածուած*

*ԳՐԻԳՈՐ ՎԱՀԱՆԻ կողմէ*

*Կը մասնակցին՝* Օր. Շուշանիկ Գէորգեան, Պ. Պ. Արտաշէս Գմբէթեան, Ն. Մարգարեան, Ն. Պշտիկեան, Ժագ Սթեփանօ, Աշոտ *եւ այլ երիտասարդ ուժեր, ինչպէս նաեւ*

Հ. Խըտըշեան — Լա Շաաաներ

Մուտքի գիները ժողովրդական:

*ԿԸ ՓՆՏՌՈՒԻ*

*Փարիզի կամ արուարձաններու մէջ, վարձու երկու սենեակ, խոհանոց, մատչելի պայմաններով:*

*Դիմել «Յառաջ»ին:*

## ԼԸ ՖՈՅԻ ԲԱՆԱԿՈՒՄՆԵՐԸ 1960 ԻՆ

(15ՐԴ ՏԱՐԻ)

*Մեր բանակումները այս տարի տեղի պիտի ունենան Յուլիս 4–30 եւ Օգոստոս 1–20: Այժմ մեր գեղեցիկ բանակավայրին մէջ կը շինուին նոր ննջարաններ: Արձանագրութեան համար դիմել* ժէօնէս է Աֆսիոնի *Հիմնադիր-Տնօրէն Վեր. Յ. Հելվաճեանի,*

6, Place de la Rotonde

St Jérôme, Marseille 13' Tel. : 62-85-10

## ԾԱԽՈՒԻ Է ՓԱՎԻՅՈՆ ՄԸ

*Ռոնի-Սու-Պուայի մէջ, 3 սենեակ, խոհանոց, տուշ, գավ, ամէն յարմարութիւնով օժտուած: 20 մեթր ճակատ, 63 մեթր երկարութիւն, ընդամէնը 900 քառակուսի մեթր, շատ լաւ մշակուած, պտղատու ծառերով պարտէզ: Մանրամասնութեանց համար հեռաձայնել* Տիկին Պարսամեանի՝

Tel. : MON. 15-75

Imprimerie Spéciale du journal « Haratch »

Հովանաւորութեամբ Լիոնի Հ. Յ. Դ. ՍԻԱՄԱՆԹՕ խումբին

*Անուշվիլի Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԸ Մայիս 14, շաբաթ ժամը 21ին կը ներկայացնէ Հայոց պատմութեան անմոռանալի էջերէն՝*

ԱՒԱՐԱՅՐԻ ԱՐԾԻՒԸ ՎԱՐԴԱՆԱՆՔ

(Ողբերգութիւն 5 արար եւ 4 պատկեր)

*ՂԵԿԱՎԱՐՈՒԹԻՒՆ Պ. ՄԻՀՐԱՆ ՇԻՇՄԱՆԵԱՆԻ*

*ԲԵՄԱԴՐՈՒԹԻՒՆ Պ.* ՏԻԳՐԱՆ ԹՈՐՈ ՍԵԱՆԻ եւ ՏԻԿԻՆ ԱԼԻՍ ԷՍՔԻՃԵԱՆԻ

6րդ թաղապետարանի սրահը Ռիւ տը Սէզ ԼԻՈՆ

ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

## ԵՂԻՇԷ ՊԱՏՐԻԱՐՔ ԴՈՒՐԵԱՆԻ

ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

19 Յունիս, կիրակի կէսօրէ ետք ժամը 2,30ին

*Հովանաւորութեամբ Հայրապետ. Պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ*

*Նախագահութեամբ Ակադեմական ԼՈՒԻ ՄԱՐԷՆԻ*

*եւ նախաձեռնութեամբ Փարիզի եւ շրջանի եկեղեցական, ազգային, մշակութային բոլոր միութիւններուն:*

Ակադեմական եւ գեղարուեստական ճոխ բաժիններով:

*Նկատի ունենալ այս թուականը:*

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ԱՄԱՎԵՐՋԻ

*ՀԱՆԴԷՍԸ*

*ՅՈՒՆԻՍ 26ԻՆ*

*Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ ԿԱՅԱՆ*

*Պզտիկներու արձանագրութիւնները պիտի փակուին Մայիսի վերջ:*

*Կեդրոնի արձանագրութեան օրերն են Չորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13–14 եւ 18–20: Անկէ դուրս ժամադրութեամբ, հեռախօս* Թռիւտէն 27-35:

5 Րիւ Մէյրան:

*Փարիզէն դուրս դիմել տեղական մասնաճիւղերուն:*

*ՄԱՐՍԷՅԼ*

*ՔԱՂԱՔ, Տիկ. Թութէլեան,* 4 Ռիւ Փարմանթիէ:

*ՊՕՄՈՆ, Տիկ. Տօլպաշեան,* 23 Պուլվար տը Պօմոն:

*ՍԷՆ ԺԵՐՈՄ, Տիկ. Շալճեան:*

## THÉATRE DES CHAMPS-ÉLYSÉES

*Մայիս 17ին, ժամը 20,30ին, ֆրանսական ձայն-պատկերասփիւռը նուագահանդէսի ձեւի տակ կ'ուտայ*

*ՄԱՐՍԷԼ ՏԸԼԱՆՈՒԱՅԻ*

*« ԱԲՐԱՀԱՄ ԵՒ ՀՐԵՇՏԱԿԸ »*

(օփերա)

*Գլխաւոր դերը կը կատարէ*

ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ

Նուագախումբ՝

Orchestre National de la R.T.F.

*Մուտքը հրաւէրով: Դիմել՝*

CENTRE PISTAURE

18 Rue François 1'





ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷ՛Ք ԵՒ ՆԿԱՏԻ ՈՒՆԵՑԷ՛Ք

Ա Ղ Ք Ա Տ Ա Խ Ն Ա Մ Ի

## ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՅՈՒՆԻՍ 12, ԺԱՄԸ 15էն 22

*ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ*

Մանրամասնութիւնները յաջորդիւ:

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԲԱՐՁՐ ՀԱՅՔԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

**CLUB, 51, Rue Grignan, Marseille**

Շաբաթ, Մայիս 21, ժամը 21էն մինչեւ լոյս

ORCHESTRE EDDY TOURNEL ԱՄԲՈՂՋԱԿԱՆ ԿԱԶՄՈՎ

*Հայկական նուագ եւ պար, ծանօթ արուեստագէտներու կողմէ*

Կ'երգեն՝ ՕՐ. Ժ. ՓԱՓԱԶԵԱՆ, Պ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

Կը նուագեն Պ. Պ. ՀԱՄՕ եւ ՊԱՐՈՅՐ Մենապար՝ Պ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ

Մուտք՝ 5 Ն. Ֆ.

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

★

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Մարսէյլի մեր բաժանորդներուն սկսած ենք ղրկել ցայսօր առկախ ձգած իրենց հաշիւներուն համապատասխան թղթատարական վճարագիրներ (Մանտա-Շէք) :

Մայիս 31ին պիտի ստիպուինք դադրեցնել թերթին առաքումը այն բաժանորդներուն, որոնք մինչեւ այդ թուականը չեն կարգադրած իրենց առկախ հաշիւները :

Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն, որոնք իրենց կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն վարչութեան գործը :

×

Ջերմապէս կը խնդրենք որ Յառաջի Շէք-Փոսթալի թիւը՝ 15069-82 օգտագործուի ՄԻԱՅՆ Յառաջի վերաբերեալ հաշիւներու համար (բաժնեգին-գործակալութիւն, ծանուցում) : Տարբեր նպատակներու յատկացուելիք գումարները (զանազան թերթերու բաժնեգիններ կամ զանազան կազմակերպութեանց նուէրները) ղրկել միայն Մանտա-քարթով :

Շնորհակալութիւն
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՏՕՎԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

ԴԷՊԻ ԼԻԶԻԷՕ ԵՒ ՏՕՎԻԼ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. ՌՈՍՏՈՄ եւ ԶԱՒԱՐԵԱՆ խումբերու եւ Ապրիլեան Սերունդին կողմէ :

ՅՈՒՆԻՍ 6
ՀՈԳԵԳԱԼՈՒՍՏԻ ԵՐԿՈՒՇԱԲԹԻՆ
(Փանթըքօթ)

Օթօքարը կը մեկնի Իսիի սովորական վայրէն առաւօտեան ժամը 6ին, Փլաս տը լա Ռեփիւպլիքէն ժամը 7ին (Պուլ. Մաժենթայի անկիւնը) :

Վերադարձ ժամը 23ին : Ճամբու ընթացքին գեղարուեստական ճոխ բաժին : Կարելի է ճաշը միասին բերել : Երթուդարձ 11.50 Ն. Ֆ. (փոխանակ չողեկառքով 37 Ն. Ֆ.ի) :

Արձանագրուիլ ճաշարան Արթիւրի մօտ (Փլաս տէ Ֆէթ) կամ Նպարավաճառ Մասիսի, 21 Րիւ Սօլնիէ, հեռ. ՓՐՕ. 16.88 :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Պ. Միքայէլ Եավէրէ տասը Ն. Ֆ., Տէր եւ Տիկ. Գասպարեանէ տասը Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Արման Ճապրեանէ տասը Ն. Ֆ., Պ. Դանիէլեանի մահուան առթիւ :



## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻՆ

45րդ տարեդարձը Վիէնի մէջ, Մայիս 28ին, շաբաթ օր :

## ՄԱՅԻՍ 28 Ը

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Շաբաթ, Մայիս 28, ժամը 21էն մինչեւ լոյս, 6րդ թաղապետարանի սրահը :

ՎԻԷՆԻ ՄԷՋ

Մայիս 29ին, կիրակի կէսօրէ ետք :

## THÉATRE DES CHAMPS-ÉLYSÉES

Մայիս 17ին, ժամը 20,30ին, ֆրանսական ձայն-պատկերասփիւռը նուագահանդէսի ձեւի տակ կ'ուտայ

ՄԱՐՍԻԼ ՏԸԼԱՆՈՒԱՅԻ
« ԱԲՐԱՀԱՄ ԵՒ ՀՐԵՇՏԱԿԸ »
(օփերա)

Գլխաւոր դերը կը կատարէ

ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ

Նուագախումբ՝

Orchestre National de la R. T. F.

Մուտքը հրաւէրով : Դիմել՝

CENTRE PISTAURE
18 Rue François 1er

## ԼԻՈՆԷՆ ԼԱԼՈՒԷ ԵՒ ՆՈԹՐ-ՏԱՄ ՏԸ ԼԱ ՌՈՇ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԶԿՕՍՈՒՑԻԿ ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆՆԵՐ

Յունիս 6ին, Հոգեգալուստի Երկուշաբթին, զբօսուցիկ ուխտագնացութիւն մը տեղի պիտի ունենայ Լալուէ՝ դեղազուարճ տեսարաններով եւ բարեպաշտական յիշատակներով լի Արտէշի այդ սրբավայրը : Երթուդարձի փոխադրութեան ծախք կը նախատեսուի 10 Ն. Ֆ. մարդագլուխ :

Նոյնպէս Յունիս 19ին կիրակի ալ Նոթր-Տամ տը լա Ռոշ, փոխադրութեան ծախք հինգ Ն. Ֆ. մարդագլուխ :

Արձանագրութիւններու համար դիմել Միքայէլ Վ. Մոմճեանի : Տեղերը սահմանափակ ըլլալով՝ վերջին պայմանաժամ արձանագրութեան մինչեւ ՄԱՅԻՍ 15 :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Նոր Սերունդի օրը Մայիս 21ին, Անիէռի թաղապետարանի սրահը :

×

Տէսինի Հայ Աւետ. Եկեղեցւոյ Երիտ. Միութիւնը պիտի ներկայացնէ Ռասինի « ԳՈԹՈՂԻԱ»ն (Աթալի), հայերէն լեզուով, Շաբաթ 18 Յունիս, երեկոյեան ժամը 8.30ին :

## ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ

ՅՈՒՆԻՍ 26ԻՆ

## Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Պզտիկներու արձանագրութիւնները պիտի փակուին Մայիսի վերջ :

Կեդրոնի արձանագրութեան օրերն են Չորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13-14 եւ 18-20 : Ասկէ դուրս ժամադրութեամբ, հեռախօս Թրիւտէն 27-35 :

5 Րիւ Մէյրան :

Փարիզէն դուրս դիմել տեղական մասնաճիւղերուն :

ՄԱՐՍԷՅԼ

ՔԱՂԱՔ, Տիկ. Թութէլեան, 4 Ռիւ Փարմանթիէ :

ՊՕՄՈՆ, Տիկ. Տօլպաշեան, 23 Պուլվար տը Պօմոն :

ՍԷՆ ԺԵՐՈՄ, Տիկ. Շալճեան :



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԼԻՈՆԻ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ԼԻՈՆԻ ՍԻԱՄԱՆԹՕ ԽՈՒՄԲԻՆ

Առնուվիլի Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԸ Մայիս 14, շաբաթ ժամը 21ին կը ներկայացնէ Հայոց պատմութեան անմոռանալի էջերէն՝

ԱՒԱՐԱՅՐԻ ԱՐԾՒԻԸ **ՎԱՐԴԱՆԱՆՔ**

(Ողբերգութիւն 5 արար եւ 4 պատկեր)

ՂԵԿԱՎԱՐՈՒԹԻՒՆ Պ. ՄԻՀՐԱՆ ՇԻՇՄԱՆԵԱՆԻ

ԲԵՄԱԴՐՈՒԹԻՒՆ Պ. ՏԻԳՐԱՆ ԹՈՐՈՍԵԱՆԻ եւ ՏԻԿԻՆ ԱԼԻՍ ԷՍՔԻՃԵԱՆԻ

Դիմայարդար՝ ԿԱՐՊԻՍ ՕՍՄԱՆՃԵԱՆ

6րդ թաղապետարանի սրահը Ռիւ տը Սէզ ԼԻՈՆ

ԱՅՍ ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ ԺԱՄԸ 21ԻՆ

## —ՑՈՒՑԱՏԵՏՐ—

Ֆ. Կ. Խաչի Շաւիլի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 4ին դպրոցի սրահը : Ընտրութիւն պատգամաւորի եւ ընթացիկ հարցեր :

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այս Չորեքշաբթի 18 Մայիս ժամը 15ին, Յոյներու սրահը : Կարեւոր օրակարգ, պատգամաւորի ընտրութիւն :

ԿԱՊՈՅՏ Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը 3ին, Ահարոնեան ակումբին մէջ, 26 Ռիւ Քոնվալէսան : Կարեւոր օրակարգ :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Վալանսի մէջ «Մայիս 28»ը կը տօնուի Մայիս 28ին, շաբաթ երեկոյը պետական թատրոնի շքեղ սրահին մէջ :

×

Իսիի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի խանասոր խումբի տարեկան խնջոյքը Մայիս 29ին :

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ :

Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷՆ ընդհ. ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերն ու ենթակոմիտէները : Ներկայ պիտի ըլլան իր ներկայացուցիչները :—

ՀԱՄԱԶԱՍՊ ենթակոմիտէն այս կիրակի առտու, ժամը 10ին :

ՎՌԱՄԵԱՆ ենթակոմիտէն այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին :

ՎԱՐԱՆԴԵԱՆ խումբը այս Կիրակի իրիկուն ժամը 9ին :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Զաւարեան ենթակոմիտէի ընկերական ժողովը 14 Մայիս շաբաթ երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին : Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է : Կարեւոր օրակարգ : Կը հրաւիրուին նաեւ «Յառաջ» խումբի ընկեր-ընկերուհիները :

## — ՑՈՒՑԱՏԵՏՐ —

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այս Չորեքշաբթի 18 Մայիս ժամը 15ին, Ցոյներու սրահը: Կարեւոր օրակարգ, պատգամաւորի ընտրութիւն:

ԿԱՊՈՅՏ Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը 3ին, Ահարոնեան ակումբին մէջ, 26 Ռիւ Քոնվալէսան: Կարեւոր օրակարգ:

Կ. ԽԱՉԻ Պոմոնի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամուհիները այս Հինգշաբթի, ժամը 15·30ին, Պոմոնի Սահակ-Մեսրոպ սրահին մէջ:

Օրակարգ.— Ա). Զեկուցում երկու տարուան գործունէութեան եւ Բ) 17րդ պատ. ընդհ. ժողովի համար պատգամաւորուհիներու ընտրութիւն:

Ընկերուհիներու ներկայութիւնը խիստ կարեւոր է:

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ԱՄԱՎԵՐՋԻ
ՀԱՆԴԷՍԸ
ՅՈՒՆԻՍ 26ԻՆ

## SALLE GAVEAU

45, RUE LA BOETIE MÉTRO MIROMESNIL

Հինգշաբթի, 19 Մայիս, ժամը 21ին

**Concerts Chouteau**

ՍԷՆՖՈՆԻՔ ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ
Ղեկավարութեամբ

### ԱՐԱ ՊԱՐԹԵՒԵԱՆԻ

Մասնակցութեամբ
Փարիզի Հայկական Երգչախումբին
ԻՐԻՍ ՊԻԻԼՊԻԻԼԵԱՆԻ

Յայտագիրը նուիրուած է հեղինակին գործերուն: (Լերան վրայ, Աշնանային, Տարրագոմի հարսը)

ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳԸ
ԻԲՐ ՕՐԱԹՈՐԻՕ

նուագախումբի, երգչախումբի, մեներգի եւ երգեհոնի համար
120 հոգինոց խումբի կողմէ:

Տոմսերու համար դիմել՝ Պարսամեան եւ Բալուեան գրատուները, եկեղեցւոյ դիւանատունը, երգչախումբի անդամներուն եւ Ա. Պարթեւեանի

14, Ռիւ Փըթի, Հեռ. Պօզարիս 99-22
Գին՝ 2,50, 4,50, 7, 9, եւ 10 Ն. Ֆ.

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՄԱՅԻՍ 28 Ը
ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Շաբաթ, Մայիս 28, ժամը 21էն մինչեւ լոյս, 6րդ Թաղապետարանի սրահը:

ՎԻԷՆԻ ՄԷՋ

Մայիս 29ին, կիրակի կէսօրէ ետք:

Ֆ. Կապ. Խաչի հանդէսը Հ. Օ. Մ.ի յիսնամեակին առթիւ, Լիւթէսիայի մեծ սրահին մէջ

ՄԱՅԻՍ 22ԻՆ:

Մանրամասնութիւնները յաջորդով:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Իսիի Հ. Ց. Դ. Նոր Սերունդի նաւասար խումբի տարեկան խնջոյքը Մայիս 29ին:

ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Տեղի պիտի ունենան 15-22 Մայիս, րեկոնները ժամը 8·30ին, Լիոնի Հայ Աւետ. Եկեղեցւոյն մէջ, 21 Պոլվ. Խօժէ Տէրիւէլ: Պիտի խօսի Վեր. Ս. ՊԱԳՏԱՍԱՐԵԱՆ, (բանաստեղծ եւ աւետարանիչ): Կարեւոր նիւթերու շուրջ:

Մուտքը ազատ է:



## Ա Ղ Ք Ա Տ Ա Խ Ն Ա Մ Ի
# ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՅՈՒՆԻՍ 12, ԺԱՄԸ 15էՆ 22

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ — ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ**

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներ եւ աւանդական շամփուրով խորոված:

ԽԻՍՏ ԿԱՐԵՒՈՐ

●

200 հոգինոց բացօթեայ ճաշ, կէսօրին ժամը 13ին, գին 10 Ն. Ֆ.: Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները: Դիմել Աղքատախնամի գրասենեակը,

32, Րիւ Տը Թրէվիզ (Հեռ. ՓՐՕ. 77-73)

ՄՈՒՏՔ 1 Ն. Ֆ.

ԾԱՆՕԹ.— Շոգեկառք առնել Կար Տիւ Նորէն մինչեւ Անկէն: Անցնիլ կամրջակը եւ թիւ 6 օթօպիւսով իջնալ Կրօլէի կայանը: Շոգեկառք ժամը 10·15, 10·32, 10·45, 11·13, 11·55, 12·20, 12·32, 14: Վերադարձ.— Ժամը 18·30էն իւրաքանչիւր 20 վայրկեանը:





## ՇՔԵՂ ՀԱՆԴԷՍ - ԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Լիոնի Հայ Մշակութային ակումբին կողմէ:
21 Մայիս, Շաբաթ երեկոյեան ժամը ճիշդ 8·30ին, Սալ Ռամոյի մէջ,

PLACE SATHONAY, LYON

Միութեանս 40 հոգինոց երգչախումբը բեմին վրայ Ղեկավարութեամբ

### ՅՈՎՍԷՓ ՎՐԴ. ԼԵՒՈՆԵԱՆԻ

Պիտի ներկայացուի «ՏԻԿԻՆԸ ԿԸ ՆՆՋԷ ...»

Յակոբ Աբրահամեանի, որուն կը մասնակցին — Սրբուհի Գզարեան, Մաննիկ Սերովբէ, Ոստանիկ Գաբրիէլեան, Գէորգ Պառաւեան:

Գեղջկական պարեր, առաջնորդութեամբ՝ Տէր եւ Տիկ. Մուրադխանեանի:

Կը մասնակցի երգիչ Բիւզանդ Ֆընտըգեան (Փարիզէն)

«ՎԵՑ ՈՒ ԿԷՍ ՊՈՐՏԻ ԺԱՌԱՆԳ ՄՆԱՑԱԾ ՄՆՏՈՒԿԸ»

Ջաւեշտ մը, ղեկավարութեամբ՝ Պ. Մարքէն Օֆլազի

Մասնակցութիւն Օր. Լեա Դաւիթեան Պ. Պ. Ստ. Զրաճեան, Արթիւր Պիլէմճեան, Փօլ Փորթուգալեան, Ժաքի Օրջանեան:

Տոմսերու գիներ.— Հրաւիրատոմս, Ա. կարգ 5 Ն. Ֆ., Բ. կարգ 3 Ն. Ֆ.:

## ՀԱՅ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ ՕՐ

Համբարձման տօնին առթիւ, այս Հինգշաբթի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կազմակերպած է Հայ Մանուկներու Հաղորդութեան օր :

Փարիզի եւ շրջանի բոլոր դպրոցներու աշակերտութիւնը հրաւիրուած է ներկայ ըլլալու հանդիսաւոր Ս. պատարագին :

Կը հրաւիրուի նաեւ հայ հասարակութիւնը :

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

SALLE PAUL FARALICQ

21, Rue Yves-Toudic (Mètro ; Bonserge..t et République)

Երեքշաբթի, 24 Մայիս, ժամը 21ին

ՆԱԶԱՐԷԹ ՊՇՏԻԿԵԱՆ կուտայ

ԹԱՏԵՐԱԿԱՆ ԾԻԾԱՂԻ ԵՐԵԿՈՅԹ ՄԸ,

ուր Փարիզահայ ամենասիրուած դերասաններու կազմով կը ներկայացուի՝

## ՕՐՀՆՈՒԱԾ ԱՐՀԵՍՏԸ

խիստ ծիծաղաշարժ կատակերգ. 3 արար Մոլիէրի «Ակամայ Բժիշկը» հանրածանօթ գործէն հայկական կեանքի վերածուած

ԳՐԻԳՈՐ ՎԱՀԱՆԻ կողմէ

Կը մասնակցին՝ Օր. Շուշանիկ Գէորգեան, Պ. Պ. Արտաշէս Գմբէթեան, Ն. Մարգարեան, Ն. Պշտիկեան, Ժագ Սթեփանօ, Աշոտ եւ այլ երիտասարդ ուժեր, ինչպէս նաեւ

Հ. Խըտըշեան — Լա Շաաաներ

Մուտքի գիները ժողովրդական :



## — ՑՈՒՑԱՏԵՏՐ —

Ֆ. Կ. ԽԱՉԻ Տէսինի մասնաճիւղի անդամական ընդհ. ժողովը 23 Մայիս, Երկուշաբթի կէսօրէ ետք ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան ներքնայարկը : Կարեւոր օրակարգ : Զեկուցում վարչութեան : Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի :

ԿԱՊ. ԽԱՉԻ Վալանսի մասնաճիւղի ընդհ. անդամական ժողովը այս Երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը 3ին, Տիկին Նուարդ Քէչէճեանի բնակարանը : Կը խնդրուի բոլոր ընկերուհիներէն ներկայ գտնուիլ սոյն կարեւոր ժողովին :

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ ՅՈՒՆԻՍ 26ԻՆ

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՍԵՒՐ

—

**1960-1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ :

## ՕՐԻՆԱԿԵԼԻ ՁԵՌՆԱՐԿ ՄԸ

Երեք ուշիմ եւ աշխատասէր նոր աշակերտներու համար — վեց տարի շարունակաբար վճարելի — մասնական նպաստ մը ստեղծուած է Սամուէլ Մուրատեան Վարժարանի Ընկերակցութեան կողմէն :

Ծնողները որոնք կը փափաքին հայեցի դաստիարակութիւն ալ տալ իրենց զաւակներուն՝ բայց նիւթական միջոցները չունին ամբողջական թոշակը վճարելու, կրնան այդ նպաստէն օգտուիլ :

Պայմաններուն համար նամակով կամ հեռախօսով դիմել Տեսչութեան :

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT

26, Rue Troyon, SEVRES (S. et O.)

Tél. : OBS. 18-28

## ՄԱՅԻՍ 28Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

28 Մայիս, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս, Զ. Թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահասրուն մէջ, 6 Փլաս Սէն Սիւլփիս :

Կը ՆԱԽԱԳԱՀԷ՝ ԸՆԿ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

Կը ԽՕՍԻՆ՝ ԸՆԿ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱԻՈՐԵԱՆ

եւ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին

Երգ՝ Յարութիւն Ճապուրեան (կիթառի ընկերակցութեամբ Լեւոն Պօյաճեանի) եւ ծանօթ երգիչ՝ ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ :

Արտասանութիւն՝ Օր. Շաքէ Յովհաննէսեան եւ ընկեր Երուանդ Գրիգորեան :

Հայկ. պարեր, մենապար եւ զոյգ պար Լիւսի եւ Վիգէն :

ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ երգչախումբը՝ ղեկավարութեամբ ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ :

Խօսնակ՝ Ընկ. Գ. ԱՄԻՐԱՅԵԱՆ

Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը :

**Robert Séto et ses Rumbero, vedette d'Europe No1**

Առատ եւ մատչելի պիւֆէ :

ՄՈՒՏՔ 4 Ն. Ֆ.

Հաղորդակցութեան միջոցներ մեթրօ Սէն Սիւլփիս :

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

28 Մայիս, Շաբաթ գիշեր

կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

29 Մայիս, Կիրակի կէսօրէ ետք

կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

### ՌՈՄԱՆԻ ՄԷՋ

27 Մայիս, Ուրբաթ գիշեր :

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

28 Մայիս, Շաբաթ գիշեր :

կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

29 Մայիս, Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին :

կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ

### ԱՄԵՐՍՖՈՐԹԻ ՄԷՋ (Հոլանտա)

29 Մայիս, Կիրակի ժամը 3 – 6 «Ասթորիա»յի սրահը

կը խօսի ՆՈՒՊԱՐ ԵՍԱՅԵԱՆ

Imprimerie Spéciale du journal « Haratch »



## ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻ ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՅՈՒՆԻՍ 12, ԺԱՄԸ 15էն 22

ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

36, AVENUE DE GAULLE, MONTMORENCY

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ — ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներ եւ աւանդական շամփուրով խորոված :

ԽԻՍՏ ԿԱՐԵՒՈՐ

•

200 հոգինոց բացօթեայ ճաշ, կէսօրին ժամը 13ին, գին 10 Ն. Ֆ. : Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները : Դիմել Աղքատախնամի գրասենեակը,

32, Րիւ Տը Թրէվիզ (Հեռ. ՓՐՕ. 77-73)

ՄՈՒՏՔ 1 Ն. Ֆ.

ԾԱՆՕԹ. — Շոգեկառք առնել Կար Տիւ Նորէն մինչեւ Անկէն : Անցնիլ կամրջակը եւ թիւ 6 օթօպիւսով իջնալ Կրօլէի կայանը : Շոգեկառք ժամը 10·15, 10·32, 10·45, 11·13, 11·55, 12·20, 12·32, 14 : Վերադարձ. — ժամը 18·30էն իւրաքանչիւր 20 վայրկեանը :

## ՄԱՅՐԵՐՈՒ ՏՕՆԸ

ԿԻՐԱԿԻ, ՄԱՅԻՍ 29, ԺԱՄԸ 20,45ԻՆ

**SALLE CHOPIN 8, Rue Daru Paris 8e**

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՀԱՅԿԱԶԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԿՈՂՄԷ

Թատերական ներկայացում, երգ, արտասանութիւն

Տեղերը ապահովել դիմելով հինգշաբթի օրերը ժամը 5էն 7, 32 Րիւ տը Թրէվիզ, վարժարանը, ինչպէս նաեւ Արաքս վաճառատունը : Հանդէսին օրը կարելի չէ տոմսակ գտնել :

## Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Պզտիկներու առաջին խումբին արձանագրութիւնները փակուած են: Սակաւաթիւ տեղեր միայն մնացած են Օգոստոսի համար:

Կեդրոնի արձանագրութեան օրերն են Չորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13–14 եւ 18–20: Անկէ դուրս ժամադրութեամբ, հեռախօսթիւէն 27·35: 5 Րիւ Մէյրան:

Փարիզէն դուրս դիմել տեղական մասնաճիւղերուն:

×

ԿԱՊՈՅՏ Խաչի Կեդր. վարչութեան 101 հազար հին ֆրանքի նուիրատուութիւնը եղած է Տէր եւ Տիկին Ալէքսանեանէ, Փավիյօն Սու Պուայէն:

## ԱՊՐԻԼ 11-24Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի առաւօտ, ժամը 9ին, Թէաթրը Ժիմնազ:

Rue du Théâtre Français, La Canebière

Հովանաւորութեամբ Ազգ. Առաջնորդարանին եւ յարանուանութեանց:
Կը նախագահէ՝ ՎԱՀՐԱՄ ՊԱՆՏԻԿԵԱՆ:
Կը խօսի՝ ԱՍԱՏՈՒՐ ՔԷՕՍԷԵԱՆ:
Օրուան պատշաճ գեղարուեստական յայտագիր:
Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Երջանկայիշատակ Մկրտիչ Սանասարեան բարերարին, կտակակատար Կ. Եղեանցի, Սանասարեան վարժարանի տեսուչներուն, ուսուցիչներուն եւ աշակերտներուն յիշատակի հոգեհանգիստը, այս Կիրակի, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ: Բոլորին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

×

Ն. Պ. Հայ Սպայից Միութեան խնդրանօք այս Կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, աւանդական հոգեհանգիստ պիտի կատարուի, ի յիշատակ բոլոր հայ պատերազմիկներու, որոնք քաջաբար ինկան 1918 Մայիսին, Սարդարաբադի եւ ուրիշ պատմական ճակատամարտերու մէջ, յետ մղելով դարաւոր թշնամիին գերազանց ուժերը, փրկեցին Հայութիւնը եւ Ս. Էջմիածինը:



## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Իսիի խառնաոր խումբը տարեկան իր առաջին ցերեկոյթը կազմակերպած է այս Կիրակի ժամը 16ին, Իսիի Խրիմեան դպրոցը:

Հաճելի մթնոլորտ:
Գեղարուեստական բաժին:
Անակնկալներ:
Սիրով կը հրաւիրուին բոլոր Նոր Սերնդականները եւ համակիրները:

## —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

ԿԱՊ. ԽԱՉԻ Ալֆորվիլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Ուրբաթ իրիկուն, ժամը 20·30ին, Ֆիլիփփի սրճարանը, Պուլվ. Քարնօ: Հաշուետուութիւն եւ պատգամաւորի ընտրութիւն:

ՍԵԲԱՍՏԻՈՅ ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑԻ ՀԱՆԴԷՍԸ, իր սանին հրջանաւարտութեան առթիւ՝
ՅՈՒՆԻՍ 19ԻՆ

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ, Վիէն.— Պատարագին ծանուցումը ուշ ստացանք:

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ
ՅՈՒՆԻՍ 26ԻՆ





Imprimerie Spéciale du journal « Haratch »

# ՄԱՅԻՍ 28Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ
## ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

28 Մայիս, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ լոյս, Զ. թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ, 6 Փլաս Սէն Սիւլփիս:

Կը նախագահէ՝ ԸՆԿ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ
Կը խօսին՝
ԸՆԿԵՐՆԵՐ ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ ԵՒ ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ
եւ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ
Ընկ. ՕՆՆԻԿ ԱԼԹՈՒՆԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին
Երգ՝ Յարութիւն Ճապուրեան (կիթառի ընկերակցութեամբ Լեւոն Պօյաճեանի) եւ ծանօթ երգիչ՝ ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ:
Արտասանութիւն՝ Օր. Շաքէ Յովհաննէսեան եւ ընկեր Երուանդ Գրիգորեան:
Հայկ. պարեր, մենապար եւ զոյգ պար Լիւսի, Վիգէն եւ Օր. Թարոն:
ՍԻՓԱՆ – ԿՈՄԻՏԱՍ երգչախումբը՝ ղեկավարութեամբ ԿԱՐԳԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ:
Դաշնակ՝ Ընկ. Գ. ԱՄԻՐԱՅԵԱՆ

Կէս գիշերին կը սկսին եւրոպական պարերը:

**Robert Séto et ses Rumbero, vedette d'Europe No 1**

Առատ եւ մատչելի պիւֆէ: ՄՈՒՏՔ 4 Ն. Ֆ.
Հաղորդակցութեան միջոցներ մեթրօ Սէն Սիւլփիս:

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Լիոնի «Վարանդեան» կոմիտէին կողմէ:
28 Մայիս, Շաբաթ գիշեր ժամը 8·30ին, Սթիւտիօ Քրէֆի մէջ, 24 Րիւ Տիւնուար:
Մասնակցութեամբ Լիոնի Հայ Ազգ. Միութեան, Ֆ. Կ. Խաչի եւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի:
Կը նախագահէ Ընկ. ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ
Կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ
Գեղարուեստական ճոխ բաժին:
Կ'արտասանեն՝ Օր. Փ. Տապաղեան, Օր. Ս. Կարապետեան, Պ. Ս. Չէքէրեան:
Կը նուագէ ընկեր Յ. Պէրպէրեան:
Կը պարէ Օր. Մութավէլեան, Շամիբամի եւ հայկական պարեր:
Կ'երգեն Օր. Ա. Կարապետեան, Պ. Ժագ Թիսօ, հայերէն եւ ֆրանսերէն Տիկին Մ. Կարապետեան:
Մուտքը ազատ է:

×

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

«Մայիս 28» կը տօնուի Րիւ Ժէ Սէն Լուի սրահին մէջ, Յունիս 5ին:
Մանրամասնութիւնները յաջորդով:

×

### ԱՄԵՐՍՖՈՈՐԹԻ ՄԷՋ (Հոլանտա)

29 Մայիս, կիրակի ժամը 3 – 6 «Ասթորիա»յի սրահը
Կը խօսի ՆՈՒՊԱՐ ԵՍԱՅԵԱՆ

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

29 Մայիս, կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:
Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ

### ՀԱՄԲԱՐՁՈՒՄԸ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Տէսինի կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ, այս Կիրակի առաւօտ ժամը 8·30ին, Համբարձման Տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ: Կը պատարագէ եւ կը քարոզէ՝ Արտաւազդ վրդ. Թրթռեան:

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. կոմիտէի եւ մասնակցութեամբ Նոր Սերունդի:
Այս Շաբաթ, ժամը 21ին, Պետական Թատրոնի շքեղ սրահը:
Կը նախագահէ Ընկ. Գ. ՔԻՐԷՃԵԱՆ
Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ
Գեղարուեստական խնամուած բաժին:
Երգ, մեներգ, արտասանութիւն, մենապար եւ հայկական պար:
Միրայօժար մասնակցութեամբ Ռոմանի Թատերախումբի, ղեկավարութեամբ Պ. Սարգիս Քէփէնէկեանի եւ մասնակցութեամբ Պ. Պ. Մ. Թաշճեանի, Մ. Գալանեանի եւ Ժ. Լուսեղինեանի:
Կը ներկայացուի խիստ ծիծաղաշարժ կատակերգութիւն մը մէկ արար:
Մուտքը ազատ է:

×

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վիէնի Անի կոմիտէի: Մասնակցութեամբ՝ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի, Ֆ. Կ. Խաչի, Հ. Կ. եւ Մարտիկներու Միութեան եւ Հ.Մ.Ը.Մ.ի
Սէրքըլ Կաթոլիքի սրահը
29 Մայիս, կիր. կէսօրէ ետք ժամը 3ին
Կը նախագահէ Նոր Սերնդական
Ա. ԼՈՒՍԱՐԵՒԵԱՆ
Կը խօսի ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ
Գեղարուեստական ճոխ բաժին, խմբերգ Նոր Սերնդականներու կողմէ:
Օր. Ժաննէթ Կիւրեղեան, դաշնակով կ'ընկերակցի Օր. Եւա:
Մեներգ.— Ընկերուհի Ռստիկեան եւ ընկեր Պասմաճեան:
Պիտի արտասանեն ընկերներ Յ. Մաթոսեան Զաքարեա եւ Քինոսեան, եւ Թուռ տիկ. Փէնէն Պ. Զաքրեան, Ռոմանէն ընկեր Քէփէնէկեան կը ներկայացնէ պաւէշտ մը՝ «ՎԱՐՁՈՒ ՍԵՆԵԱԿԸ» եւ անակնկալներ:



## ՄԱՅՐԵՐՈՒ ՏՕՆԸ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հովանաւորութեամբ Հայրապետական պատուիրակ, ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՄԱՆՈՒԿԵԱՆԻ եւ նախաձեռնութեամբ Ալֆորվիլի եկեղեցւոյ հոգաբարձութեան Տեղի պիտի ունենայ 29 Մայիս, Կիրակի օր, տեղւոյն Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ:

Այս առթիւ Ուրբաթ երեկոյ 27 Մայիս, Եկեղեցւոյ շրջափակին մէջ, պիտի կատարուի հանդիսաւոր արարողութիւն, եւ զենումը մատաղցու ոչխարներուն, որ Կիրակի օր Ս. պատարագէն յետոյ, իբրեւ աւանդական հոգեճաշ, պիտի բաշխուի, հաւատացեալ ժողովուրդին:

Հոգաբարձութիւնը որոշած է, նոյն արարողութիւնը ամէն տարի կրկնել մայրերու տօնին առթիւ:

Մատաղի ծախքերուն մասնակցելու համար դիմել հոգաբարձութեան:

## ՆՈՐԵՐՈՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

Օրիորդ Իրմա Պօղոսեան էֆս ան Փրո – վանսէն փայլուն կերպով աւարտած է Փարիզի երաժշտական դպրոցը, առաջին հանդիսանալով երաժշտական դաստիա – րակի պետական վկայականին մրցական քննութիւններուն մասնակցող ամբողջ Ֆրանսայի թեկնածուներուն :

Այս առթիւ Տիկին Թորոսեան յաջողու– թիւն մաղթելով 10 Ն · Ֆ · կը նուիրէ Յա– ռաջին :

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Մայրերու Տօնին առթիւ Տիկին Եա – գուպեանի (Լը Փէրէօ) մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր աղջիկը :

## ՆՈՒԷՐ

Տիկին Սէրճանեան եւ Տիկին Արապեան իրենց մօր եւ մեծ մօր Մարիամ Յովհան– նէսեանի մահուան 16րդ տարեդարձին առթիւ 30 Ն · Ֆ · կը նուիրեն Կապ · Խաչի կայանին եւ 20 Ն ·Ֆ · «Յառաջ»ին : (Ստա– նալ «Յառաջ»էն) :

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

### Ս Ե Ւ Ր

—

**1960-1961**

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐ – ՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ :

Պայմաններուն համար դիմել՝

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

×

ՏԱՐԵՎԵՐՋԻ ԵՒ ՊԱՐԳԵՒԱԲԱՇԽՈՒ – ԹԵԱՆ ՀԱՆԴԷՍԸ՝ ԿԻՐԱԿԻ՝
ՅՈՒՆԻՍ 26, ԺԱՄԸ 16ԻՆ

## ՆՈՒԷՐՆԵՐ

Ֆ · Կ · ԽԱՉԻ Կեդր · Վարչութիւնը շը– նորհակալութեամբ ստացած է ՀՕՄ ·ի յիսնամեակի տօնակատարութեան առթիւ Տէր եւ Տիկին Օտապաշեանէ հարիւր Ն · Ֆ · : Նոյն առթիւ կայանի ի նպաստ Ոմն յիսուն Ն · Ֆ · : Պ · Հ · Պալեանէ քսան Ն · Ֆ · Պալեան գերդաստանի հոգեհանգստ – եան առթիւ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

ԿՐԸՆՈՊԼԸ ·—Փոքրիկներ Յարութիւն և Սարգիս Սվազլեան (Տէսինէն) իրենց նո– րածին եղբօր Ստեփանի մկրտութեան առթիւ եւ ի յիշատակ իրենց հանգուցեալ մեծ հօր եւ մեծ մօր՝ Ստեփան եւ Տիրու– հի Քաշքճեան, կնքահօր՝ Յարութիւն Օնպաշեանի եւ քեռայրին Անթուան Օ – հանեանի 30Ն ·Ֆ · կը նուիրեն Մշակոյթի Տան Յարութիւն Օնպաշեան սրահին :

Նորածինին փոխանորդաբար կնքահայ– րը՝ Միշէլ Իւլրիշ եւ իր քոյրը Մարսէլ եւս 70 Ն · Ֆ · կը նուիրեն Յարութիւն Օնպաշեան սրահին :

×

ՍԷՆ ՇԱՄՈՆԷՆ Պ · Կարապետ Քէշէ – ճեան Ս · Թեհլիրեանի մահուան տխուր առթիւ, 10 Ն · Ֆ · կը նուիրէ Մշակոյթի տան :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստա – ցած է ի նպաստ վարժարանին հրապա – րակ հանած նուիրատոմսերէն ·—

Ե · ՑԱՆԿ

| | |
|---|---|
| Պ · Տիրան Խայիկեան | Ն · Ֆ · 500 ·— |
| Պ · Մութաֆեան (Լոնտոն) | 130 ·87 |
| Պ · Գ · Կիւլպէնկեան (Լոնտոն) | 100 ·— |
| Պ · Հ · Ապաճեան (Լոնտոն) | 100 ·— |
| Տիկին Պապայեան (Լոնտոն) | 100 ·— |
| Պ · Արամ Ապաճեան | 50 ·— |
| Պ · Եագուպեան » | 50 ·— |
| Տիկին Աննա Սառաճեան | 100 ·— |
| Տիկ · Արաքսի Մալաքեան | 100 ·— |
| Պ Տալըքիփէլեան | 100 ·— |
| Պ · Պէրպէրեան (Լիոն) | 50 ·— |
| Տիկ · Սօրաթեան (Մարսէյլ) | 50 ·— |
| Պ · Հրաչեան (Մարսէյլ) | 50 ·— |
| Պ · Ադամեան (Վալանս) | 50 ·— |
| Պ · Արամ Ֆրէնկեան | 30 ·— |
| Պ · Քամպէրեան | 20 ·— |
| Ոմն | 70 ·— |
| Գումար | 1650 ·87 |
| Նախորդ գումար | 10 ·220 ·— |
| Ընդհ · գումար | 11 ·870 ,87 |

Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՆԻՍԻ ՄԷՋ

Այս երեքշաբթի իրիկուն ժամը 20 ·30 – ին, Սինեմա Մանեան : Ավընիւ-Քալիֆօրնի կը ներկայացուի՝

### ՊԱՏՈՒՈՅ ՀԱՄԱՐ

(Շիրվանզադէ)

Դաւիթ Բէկէն եւ Անուշէն կտորներ պատրաստուած Երեւանի մէջ :

Տոմսերու գին 3 Ն · Ֆ ·, ի նպաստ Կապ · Խաչի օգափոխութեան կայանին :

×

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Այս Երեքշաբթի իրիկուն ժամը 20 ·30– ին, Սինեմա Ռօզսի (65պիս, Րիւ Ռօշը – շուար) :

### Ի՞ՆՉ Է ՊԱՏՄՈՒՄ ԳԵՍԸ ՀԱՅԱԽՕՍ ԺԱՊԱՒԷՆ

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Այս տարի Հայ Կարմիր Խաչի Ֆէսան – վիլլէի օգափոխութեան կայանի բացու – մը տեղի պիտի ունենայ Յուլիս 1ին :

Արձանագրութեան համար դիմել Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին, 15, Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, Երկուշաբթի եւ Ուրբաթ առաւօտները, ժամը 10–12 :

×

Հայ Կարմիր Խաչի օրուան առթիւ Ֆէ– սանվիլլէի օգափոխութեան կայանին կը նուիրեն ·— Պ · Պ · Վ · Ֆրէնկեան, Պ · Ֆը– րէնկեան, Տէր Գէորգեան, Վ · Ճէվահիր– ճեան, Արզումանեան, Էգնայեան 50ական Ն · Ֆ · :

## ՄԱՅԻՍ 28 Ի ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

«Մայիս 28» կը տօնուի Րիւ Ժէ Մէն Լուի սրահին մէջ, Յունիս 19ին : Մանրամասնութիւնները յաջորդով :

## ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍԸ ՅՈՒՆԻՍ 26ԻՆ

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Հայ Գրողներու Ընկերութիւնը, 7 Մա– յիսին գումարուած իր ընդհ · անդամա – կան ժողովին մէջ ընտրած է իր նոր վար– չութիւնը, հետեւեալ կազմով ·— Ալեք – սանեան Աւետիս, Անդրէասեան Վազգէն (գանձապահ), Զարոյեան Պետրոս (նա – խագահ), Թօփալեան Բիւզանդ (քարտու– ղար), Մելիքեան Վաղարշակ եւ Որբունի Զարեհ :

## Կ'ՈՒԶՈՒԻ

15 – 18 տարեկան օրիորդ մը խանու – թի գործերով զբաղելու համար եւ ծա – խելու (կնոջ մեծաքանակ հագուստի հա – մար) :

Դիմել՝

